Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 17 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս 2—52—78:



# ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԻՆ

## Ա. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

*Սկսվեց նոր ուսումնական տարին: Դա «Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և ՍՍՌՄ-ում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած նոր օրենքի կենսագործման առաջին ուսումնական տարին է:*

*Նոր ուսումնական տարվա հիմնական խնդիրը կրթության և դաստիարակության սիստեմի վերակառուցումն է, որի իմաստն այն է, որ աճող սերունդը լինի կյանքի համար լավ նախապատրաստված, պարտիային ու Հայրենիքին անհունորեն նվիրված, որպեսզի դպրոցականի մեջ ներդաշնակորեն զուգակցվեն հոգևոր հարստությունը, բարոյական մաքրությունը և ֆիզիկական կատարելությունը:*

*Աճող սերնդի դաստիարակության բնագավառում պարտիայի քաղաքականությունը ել-*

նում է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանին անցնելու կոնկրետ խնդիրներից և նպատակ ունի դաստիարակել տվյալ ժամանակաշրջանին արժանի քաղաքացիներ։ Այս խնդիրների իրականացումը սովետական կրթության սիստեմը կբարձրացնի նոր աստիճանի։

Մեր ռեսպուբլիկայի ժողովրդական կրթության օրգանները, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, լուրջ նախապատրաստական աշխատանքներ են տարել դպրոցի վերակառուցման մասին ընդհանուր օրենքից բխող՝ «Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և Հայկական ՍՍՌ-ում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» օրենքը կենսագործելու համար։

1959—60 ուսումնական տարում ռեսպուբլիկայում կունենանք 174 տարրական, 692 ութամյա և 318 միջնակարգ դպրոցներ։ Մինչև 1965 թվականը արտադրական թեքումով միջնակարգ աշխատանքային պոլիտեխնիկական դպրոցների թիվը կհասնի 365-ի։ Բացի դրանից, մեծ ուշադրություն է դարձվում բանվորի ու գյուղերիտ (հերթափոխային, սեզոնային), ինչպես նաև հեռակա միջնակարգ դպրոցների զարգացմանը։ Այս



տարի ռեսպուբլիկայում կգործեն 195 բանվորի ու գյուղերիտ դպրոցներ, այսինքն՝ 20-ով ավելի, քան անցած տարի։ Մինչև 1965 թվականը այդ դպրոցների թիվը կաճի գրեթե 2 անգամ։

Կոմունիզմի իսկական ծիլեր են գիշերօթիկ դպրոցները,— ասել է ընկ. Ն. Ս. Խրուշչովը։ Դրանք ուսումնա-դաստիարակչական հիմնարկների նոր տիպ են և կոչված են ցույց տալու ուսուցումն արտադրական աշխատանքին զուգակցելու, աճող սերնդին կոմունիստական դաստիարակություն տալու բարձր օրինակներ։ Անցյալ տարի կար այդ տիպի 5 դպրոց, այս տարի կգործեն ևս 5-ը, իսկ 1965 թվականին դրանց թիվը կհասնի 70-ի, որտեղ կներգրավվեն 24 հազար երեխաներ։

Արդեն հաստատվել և հրապարակվել են ուսումնական նոր պլաններն ու նոր ծրագրերի նախագծերը, որոնք ուսումնասիրվում են մանկավարժական կոլեկտիվներում։ Նոր ուսումնական տարում այդ պլաններով ու ծրագրերով կգործեն բոլոր տարրական դպրոցները, ութամյա, միջնակարգ, բանվորի ու գյուղերիտ դպրոցների 1—5-րդ դասարանները։ Ուսումնական նոր ծրագրերով կգործեն նաև հանրակրթական ու բանվորի մի շարք

*դպրոցների 9-րդ դասարանները և գյուղերի տ դպրոցների 8-րդ դասարանները, որոնք ունենալու են արտադրական որոշակի թեքում և իրենց կրթությունը ավարտելու են 11-րդ դասարանով։*

*Մասսայական, բաներիտ և գյուղերիտ դպրոցների 6—10-րդ դասարաններն այս տարի կշարունակեն գործել ուսման հին պլաններով ու ծրագրերով։*

*Պլանավորված է այնպես, որ մինչև 1964—65 ուսումնական տարին բոլոր ուսումնական հաստատությունները փոխադրվեն ուսուցման նոր սիստեմի։*

*Ուսուցչական օգոստոսյան խորհրդակցությունները և շրջաններում գումարված ուսուցիչների եռօրյա սեմինարները օգնեցին նրանց լավ պատկերացնելու դպրոցների զարգացման կոնկրետ ձևերն ու խնդիրները և դրանք գործնականում իրականացնելու։*

*Ուսումնական նոր պլաններով հնարավորություն է ստեղծվում ութամյա դպրոցների շրջանավարտներին զինելու որոշակի գիտելիքներով և գործնական աշխատանքի հմտություններով, որպեսզի նրանք կարողանան անմիջապես անցնել կոմունիստական շինարարության տարբեր բնագավառներում աշխատանքի և, դրան զուգընթաց, ձեռք բերեն*



*միջնակարգ, իսկ հետագայում նաև՝ բարձրագույն կրթություն։ Այդ նպատակով ծրագրով նախատեսված մի շարք գիտությունների ուսուցումն ավարտվելու է։ Մտցված են աշխատանքային դաստիարակություն տվող նոր առարկաներ, սահմանված է արտադրական պրակտիկա։*

*Պատանիներն ու աղջիկները միջնակարգ կրթություն ձեռք կբերեն հիմնականում երեք ուղիով. ա) բաներիտ և գյուղերիտ երեկոյան (հերթափոխային, սեզոնային) կամ հեռակա միջնակարգ հանրակրթական 3-ամյա դպրոցներում, բ) արտադրական ուսուցմամբ միջնակարգ հանրակրթական աշխատանքային պոլիտեխնիկական 3-ամյա դպրոցներում, գ) միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ տեխնիկումներում և ուսումնարաններում։*

*Միջնակարգ կրթություն տվող այս ուսումնական հաստատություններում ութամյա դպրոցների շրջանավարտների ուսուցումը կտարվի արտադրական աշխատանքին զուգակցված։ Դրանով կլուծվի ժողովրդական տնտեսության համար դպրոցականներից միջին որակի կադրեր պատրաստելու կարևորագույն խնդիրը։ Ուսումնական պլաններն ու ծրագրերը լիակատար հնարավորություն*

են տալիս իրականացնելու դպրոցի առջև դըրված այդ խնդիրը։

Սակայն չպետք է մոռանալ, որ դպրոցի վերակառուցումը նախատեսում է կրթության որակի և սովորողների գիտելիքների մակարդակի հետագա բարձրացում։ Միանգամայն սխալ են այն կարծիքները, թե աշխատանքային ուսուցումը կթուլացնի կրթության մակարդակը։

Փորձը ցույց է տալիս, որ աշխատանքային դաստիարակությունը մեծ չափով նպաստում է գիտելիքների յուրացմանը և սովորողների առաջադիմության բարձրացմանը։ Անցյալ տարի Ստավրոպոլի երկրամասի դպրոցների օրինակով գրեթե բոլոր միջնակարգ դպրոցներում ստեղծվեցին ուսումնա-արտադրական բրիգադներ, որոնք ակտիվորեն աշխատում են գործարաններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում և շինարարական հրապարակներում։ Երկրորդ տարին է, ինչ Մեղրիի շրջկենտրոնում ստեղծվել է աշակերտական կոլտնտեսություն, որը աճեցնում է հիանալի բերք։ Եղեգնաձորի և Ստեփանավանի շրջանների շատ դպրոցներ, Ռյազանի մարզի դպրոցների օրինակով, ստեղծել են ուսումնա-արտադրական տնտեսություններ։ Երեխաները խնամում են անասուն-



ներ, թռչուններ, ունեն ջերմոցային տնտեսություններ։ Այս ամռանը Երևանի գրեթե բոլոր, Լենինական, Կիրովական քաղաքների և գյուղական շատ դպրոցներ դպրոցական շենքերի, գույքի և լաբորատոր սարքերի վերանորոգումը կատարեցին ինքնասպասարկման կարգով, աշակերտների ուժերով, որի շնորհիվ տնտեսվեցին հարյուր-հազարավոր ռուբլիներ, որը տրամադրվեց լաբորատորիաների, կաբինետների ու արհեստանոցների հարստացմանը։ Այդ աշխատանքների մեջ աճում է սովորողների հետաքրքրությունը դեպի հանրակրթական առարկաների ուսումնասիրումը, բարձրանում է նրանց գիտելիքների մակարդակը, ամրապնդվում է կարգապահությունը։

Աշխատանքային դաստիարակության համար կարևոր նշանակություն ունի դպրոցների ուսումնա-նյութական բազայի հարստացումը։ Ռեսպուբլիկայի շատ դպրոցներ ունեն իրենց ուսումնական արհեստանոցները, լաբորատորիաներն ու կաբինետները, որոնք սիստեմատիկորեն հարստացվում են։ Նոր սարքավորումների ձեռք բերման համար այս ուսումնական տարում տրամադրվել է 4 միլիոն ռուբլի։ Երևանի Լենինյան շրջանում և Լենինական քաղաքում ստեղծված են միջ-

դպրոցական ուսումնական արհեստանոցներ։ Այդ փորձը պետք է տարածել նաև մյուս շրջաններում։

Խնդիրն այն է, որ առաջիկայում ուսումնական արհեստանոցներ, մեքենագիտության, էլեկտրատեխնիկայի և գյուղմեխանիզացիայի կաբինետներ, ֆիզիկայի, քիմիայի, բիոլոգիայի, գծագրության, աշխարհագրության լաբորատորիաներ ու կաբինետներ ստեղծվեն ոչ միայն միջնակարգ դպրոցներում, այլ նաև բոլոր ութամյա, երեկոյան (հերթափոխային, սեզոնային) հանրակրթական դպրոցներում։ Առանց ուսումնա-նյութական ամուր բազայի անհնար կլիներ լիովին ապահովել ուսուցման գործնական բնույթը, մանավանդ այն վայրերում, ուր դպրոցներին մոտիկ չկան գործարաններ, ֆաբրիկաներ, շինարարական հրապարակներ, նորոգման-տեխնիկական կայաններ, էլեկտրակայաններ և այլն։ Գյուղական դպրոցների մեծ մասն ունի ուսումնա-փորձնական հողամաս։ Այնտեղ երեխաները կատարում են փորձարարական հիանալի աշխատանքներ։ Պետք է հասնել այն բանին, որ հողամասեր ունենան բոլոր դպրոցները և դրանք մշակվեն առաջավոր ագրոտեխնիկայի հիման վրա։

Մի շարք շրջաններում միջնակարգ դպրոց-



ների ղեկավարները համաձայնություն են ձեռք բերել արտադրական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների, նորոգման-տեխնիկական կայանների ղեկավարների հետ, որպեսզի վերջիններս նախապատրաստեն դպրոցականների արտադրական աշխատանքի համար մշտական տեղեր և թույլ տան իրենց մոտ անցկացնելու արտադրական պրակտիկա։ Այդ գործը լավ է կազմակերպված Երևանի Ստալինյան և Սպանդարյանի շրջաններում ։ Առաջիկայում պետք է այդպիսի համաձայնություն ձեռք բերեն նաև մյուս դպրոցների ղեկավարները։

Հայտնի է, որ աշխատանքային դաստիարակությանը խոշոր չափով նպաստեց ինքնասպասարկմանն անցնելը։ Այս ուղղությամբ հիանալի փորձ ձեռք բերեցին գիշերօթիկ №№ 1, 2, 5, Երևանի Չարենցի, Ձերժինսկու, Պուշկինի, Լենինականի № 10, Ստեփանավանի, Ալավերդու, Աշտարակի, Էջմիածնի և այլ շրջանների բազմաթիվ դպրոցներ։ Պետք է հասնել այն բանին, որ ինքնասպասարկման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը լիովին իրականացվի։

Երբեք չպետք է մոռանալ, որ աշխատանքները պետք է հանձնարարել երեխաների ֆի-

գիկական կարողությունները և նրանց տարի-
քը հաշվի առնելով, ինչպես նաև մտածելով
նրանց առողջության վիճակի պահպանման
մասին։

Նոր ուսումնական տարվա գլխավոր խըն-
դիրներից մեկն է՝ ճիշտ զուգակցել երեխա-
ների ուսուցումը՝ նրանց աշխատանքի, հան-
գըստի և սպորտային միջոցառումների հետ։

Խոսելով դպրոցի զարգացման մասին,
չպետք է մոռանալ ուսուցման մեթոդների
և ձևերի կատարելագործումը։ Չի կարելի
դասավանդումը շարունակել հին ձևով, հաշ-
վի չառնելով այն նորը, որը մտնում է ու-
սուցման մեջ։ Չէ՞ որ ուսուցումն այժմ տար-
վելու է գործնական աշխատանքներին ու
փորձերին զուգորդված, ուստի դրան պետք է
համապատասխանի ուսուցման ձևը։ Ահա
երկրորդ տարին է, որ Երևանի բանվորի № 1
դպրոցը կիրառում է ուսուցման նոր մեթոդ։
Ուսումնական տարին այստեղ բաժանված է
երկու կիսամյակի, դասերը տարվում են եր-
կու էտապով՝ գիտելիքների հաղորդման և
ապա՝ մշակման էտապներով։

Ուսուցման ռացիոնալ ձևեր են իրակա-
նացնում Քանաքեռի, Երևանի Պուշկինի ան-
վան դպրոցները։

Ուսուցչի մանկավարժական վարպետու-



թյան բարձրացման, ուսուցման ձևերի ու մե-
թոդների կատարելագործման և սովորողների
ինքնուրույնության ու ակտիվության զար-
գացման աշխատանքը նոր ուսումնական
տարվա հիմնական խնդիրներից մեկն է։

Այս ուսումնական տարվանից դպրոցն
անցնում է ութամյա ընդհանուր պարտադիր
կրթության իրականացմանը։

Ընդհանուր ութամյա կրթության կենսա-
գործումը պահանջում է դպրոցական նոր
շենքեր։ Յոթնամյակում այդ նպատակի հա-
մար կիրացվի 691 միլիոն ռուբլի։ Այս տարի
լայն տարածում են գտել ինտեռնատների
շենքերի, դպրոցական բուֆետների ու ճա-
շարանների կառուցումը։ Կբացվեն երկարօր-
յա նոր դասարաններ։

Նոր ուսումնական տարվա հաջողությունը
պայմանավորված է պարտիական, սովետա-
կան կազմակերպությունների, ժողովրդական
կրթության աշխատողների ճկուն աշխատան-
քով։ Նրանք պետք է դառնան ժողովրդական
լուսավորության բնագավառում ամեն մի նո-
րի, առաջավորի ակտիվ պրոպագանդիստ-
ներն ու առաջավոր կիրառողները։

---

# ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԶՐՈՒՅՑ ՎԱԼԵՆՏԻՆԱ ԳԱԳԱՆՈՎԱՅԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*Մեր մեծ Հայրենիքը ապրում է իր ստեղծագործական ուժերի լիակատար ծաղկումը և համաչափ քայլերով ու վստահորեն առաջ է շարժվում դեպի կոմունիզմ։ Ամեն օր ուրախալի լուրեր են ստացվում Հարազատ Կոմունիստական պարտիայի XXI համագումարի պատմական որոշումները կենսագործելու մասին։ Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում նոր թափով ծավալվում է համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ յոթնամյակը ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով կատարելու համար։ Հենց այդ նպատակին է նվիրված Վիշնևվոլոցկի բամբակե գործվածքեղենի կոմբինատի մանվածքային ֆաբրիկայի բրիգադիր Վալենտինա Գագանովայի հիանալի նախաձեռնությունը։*

*Վալենտինա Գագանովայի նախաձեռնու-*



*թյան էությունն այն է, որ որքան կարելի է շուտ հաղթահարել հետամնացությունը, օգնել ետ մնացող կոլեկտիվներին ու բրիգադներին առաջավորներին հասնելու համար։ Նա սեփական նախաձեռնությամբ առաջավոր բրիգադայից աշխատանքի է անցնում ետ մնացող բրիգադայում, կարճ ժամանակում լիկվիդացնում այնտեղ գոյություն ունեցող թերությունները և բրիգադան դուրս է բերում առաջավորների շարքը։*

*Խոսելով Վալենտինա Գագանովայի հիանալի նախաձեռնության մասին ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշել է, որ «Այդ մարդու վարմունքի արժեքը և ազնվությունը այն է, որ նրան ոչ թե նյութական շահագրգռվածությունն է մղել այդ քայլը կատարելու, այլ գաղափարայնությունը, կոմունիստական կարգին նվիրվածության գաղափարը»։*

*Գագանովան ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումում պատմել է, թե ինչպես իրեն հաջողվեց ապացուցել, որ չկան վատ մեքենաներ, վատ բրիգադա և տեղամաս։ «Վատն այնտեղ է,— ասել է նա,— որտեղ մարդիկ վատ են աշխատում, որտեղ ցածր է աշխատողների որակավորումը, որտեղ աշխատանքը չի կազմակերպված այնպես, ինչպես պահանջվում է, որտեղ ցածր է աշխատանքային*

կարգապահությունը։ Ինձ թվում է, որ մեր
բանվորները հասկանում են, որ ետ մնա-
ցողները կարող են առաջավորներ դառնալ,
եթե իրենք այդ ցանկանան և եթե նրանց
ժամանակին ու լավ օգնություն ցույց տան
ավելի ուժեղ ընկերները»։

Վալենտինա Գագանովայի նախաձեռնու-
թյունը շատ բարձր գնահատվեց Սովետա-
կան կառավարության կողմից։ Նա արժա-
նացավ Սոցիալիստական Աշխատանքի Հե-
րոսի կոչմանը։

Մեր ագիտատորների խնդիրն է ունկնդիր-
ներին հանգամանորեն պարզաբանել Գա-
գանովայի նախաձեռնությունը, որը կոմու-
նիստական գիտակից վերաբերմունքի և
աշխատասիրության վառ օրինակ է։ Լավ
կլինի, որ ագիտատորները հաճախակի հա-
տուկ զրույց կազմակերպեն այն մասին, թե
Գագանովայի նախաձեռնությունը ինչ ար-
դյունք տվեց իրենց բրիգադային կամ ձեռ-
նարկությանը, ինչպես ավելացավ արտա-
դրանքի թողարկումը և բարձրացավ արտա-
դրանքի որակը և թե ինչպես ետ մնացող
բրիգադները հասան առաջավորներին։
Զրույցի ընթացքում հարկավոր է հիշատակել
նաև, որ հաղթահարելով ետ մնալը և հավա-
սարվելով առաջավորներին, միաժամանակ



բարձրանում է աշխատավարձը։ Դրա հետ
միասին անհրաժեշտ է ունկնդիրներին պար-
զաբանել, որ Վ. Գագանովայի նախաձեռնու-
թյան մեջ դրսևորված է սովետական մար-
դու բարձր բարոյականությունը, նրա կո-
լեկտիվիզմը, ջերմ բարեկամությունը, ան-
շահախնդիր փոխադարձ օգնությունը։ Միան-
գամայն ճիշտ է վարվել Երևանի Կոնսերվի
գործարանի բանջարեղենի ցեխի ագիտա-
տոր Ջամմա Հարությունյանը, հանգամանո-
րեն պարզաբանելով Վալենտինա Գագանո-
վայի նախաձեռնության մեծ կարևորությու-
նը յոթնամյա պլանը ժամկետից շուտ կա-
տարելու, ետ մնացողներին օգնություն
ցույց տալու միջոցով առաջավորներին հաս-
ցնելու գործում։

Կապիտալիստական հասարակարգի մար-
դը, որը վարակված է բուրժուական աշխար-
հի սեփականատիրական, անհատականու-
թյան հոգեբանությամբ, երբեք չի կարող
հասկանալ, ինչու սովետական մարդիկ դի-
մում են անձնազոհության, հանուն հասա-
րակության բարիքի։ Վ. Գագանովայի արար-
քը հատուկ է միայն սովետական կարգին,
որտեղ մարդիկ աշխատում են ոչ թե շահա-
գործողների, կապիտալիստների համար,
այլ իրենց համար, ամբողջ հասարակու-

թյան համար, զգալով իրենց երկրի լիիրավ
տերը։
Այժմ, երբ պարտիայի կոչով մեր երկ-
րում համաժողովրդական սոցիալիստական
մրցություն է ծավալվել յոթնամյակը ժամ-
կետից շուտ կատարելու, տեխնիկական
պրոգրեսը իրագործելու և առաջավոր փոր-
ձը արտադրության մեջ արմատավորելու
համար, բացառիկ կարևորություն է ստա-
նում ետ մնացող ձեռնարկությունները, ցե-
խերը, կոլտնտեսությունները, սովխոզները,
բրիգադները առաջավորներին հասցնելը,
Գագանովայի օրինակով աշխատելը։
Տարածելով Գագանովայի հայրենասիրա-
կան նախաձեռնությունը, մեր ագիտատոր-
ները պետք է կոնկրետ օրինակներով ուն-
կընդիրներին պարզաբանեն այդ նախաձեռ-
նության ժողովրդատնտեսական և քաղա-
քական կարևորությունը և ձգտեն այն բա-
նին, որպեսզի ավելի մեծ թվով աշխատող-
ներ պայքարեն ետ մնալու դեմ և հասնեն
առաջավորներին։ Հարկավոր է զրույցի ըն-
թացքում հիշատակել Գագանովայի բրիգա-
դայի այս տարվա արդյունքները, թե ինչ-
պես նրա բրիգադն բացի պլանները գե-
րակատարելուց, այս տարի արդեն պլանից
դուրս երկրին տվել է 200 հազար մետր



գործվածք, 100 տոննա թել, որից կարելի է
պատրաստել 750 հազար մետր գործվածք։
Նման օրինակների թիվը քիչ չեն նաև մեր
ռեսպուբլիկայի ձեռնարկություններում։
Օրինակ, մտնելով յոթնամյակը ժամկե-
տից շուտ կատարելու համար ծավալված
սոցիալիստական մրցության մեջ, նշանա-
կալից հաջողությունների է հասել Երևանի
էլեկտրատեխնիկական գործարանի կոլեկ-
տիվը։ Այստեղ բազմաթիվ բանվորներ, ինչ-
պես, օրինակ, Կ. Աբրահամյանը, Օ. Ուկոլո-
վան, Վ. Ավետիսյանը և Կ. Գալֆյանը, սիս-
տեմատիկաբար գերակատարում են իրենց
արտադրական նորմաները։ Նրանք որոշել
են անպայման առաջնություն շահել յոթնամ-
յակը ժամկետից շուտ կատարելու համար
ծավալված մրցության մեջ։
Երկրին ավելի շատ և ավելի բարձրորակ
արտադրանք տալու նշանաբանով է աշխա-
տում Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գոր-
ծարանի կոլեկտիվը։ Գործարանի բոլոր ցե-
խերն էլ գերակատարել են արտադրական
պլանները։ Այստեղ անցած ամիսների ըն-
թացքում արտադրանքի ինքնարժեքի իջեց-
ման միջոցով տնտեսվել է կես միլիոն ռուբ-
լի, իսկ արտապլանային եկամուտները հա-
սել են մեկ միլիոն ռուբլու։ Առանձնապես

լավ են աշխատել կարբիտի, №№ 30—30ա, 1—1, 1—5 ցեխերը։ Գործարանի կոլեկտիվը պարտավորվել է յոթնամյակում համախառն արտադրանքն ավելացնել 2,5 անգամ, 1964 թվականին հասնել 1965 թվականի արտադրության մակարդակին, 1958 թվականի համեմատությամբ, 1964 թվականին աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 70 տոկոսով։

Յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու համար լայն մրցություն է ծավալվել Լենինականի դեպոյում, որտեղ լոկոմոտիվների վազքի օրական նորման կատարվել է 106,1 տոկոսով, տեխնիկական արագությունը՝ 109,9 տոկոսով։ Տարեսկզբից մինչև վերջերս լենինականցիները վարել են 1.200 ծանրաքարշ գնացք, պլանից ավել փոխադրելով 208 հազար տոննա բեռ։ Այստեղ էլեկտրաքարշայինները մրցում են Թբիլիսիի էլեկտրաքարշայինների հետ։ Այդ կապակցությամբ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Սերգեյ Միքայելյանը Թբիլիսիի իր մրցակցին գրում է՝ «... Ամենքին հայտնի է թե ինչպիսի արդյունքներ է տալիս ածխահատ Ն. Մամայի և մանածագործուհի Վ. Գագանովայի բարեկամական մրցությունը։ ... Եկ, բարեկամս, սկիզբ դնենք նոր շարժ-



ման, ավելի լավ օգտագործենք տեխնիկան, խտացնենք ծանրաքարշայինների շարքերը, ապահովենք ժողովրդա-տնտեսական բեռների արագ փոխադրումը»։ Անհրաժեշտ է այդ օրինակները զրույցի ընթացքում օգտագործել։

Ագիտատորի զրույցն ավելի նպատակասլաց կլինի, եթե նա ունկնդիրներին պարզաբանելով Վալենտինա Գագանովայի նախաձեռնության էությունը և նրա ժողովրդատնտեսական նշանակությունը, միաժամանակ օգնի նրանց առաջավորներին հասնելու համար։ Ամենից առաջ պետք է մանրակրկիտ պարզաբանել, թե տվյալ բրիգադան, տեղամասը կամ ցեխը գործնականում ինչպես պետք է ընդօրինակի Գագանովայի փորձը։ Այնուհետև ունկնդիրը հստակ պատկերացում պետք է ունենա այն մասին, որ Գագանովայի նախաձեռնությունը վերաբերում է ոչ միայն առաջավոր կոլեկտիվների ղեկավարներին, որոնք օգնության են հասնում ետ մնացողներին, այլև ամեն մի աշխատողի, որը ցանկանում է Գագանովայի հետևորդը լինել։ Չէ, որ այդ հիանալի նախաձեռնության հիմնական էությունը ետ մնալը հաղթահարելն է։

Ի հարկե զրույցի բովանդակությունը մե-

ծապես պայմանավորված է տվյալ կոլեկտիվի ցուցանիշներով, այն կոնկրետ պայմաններով, որի մեջ գտնվում է նա։ Եթե զրույցը տեղի է ունենում առաջավոր բրիգադայում, հարկավոր է առաջ քաշել ցածր ցուցանիշներ ունեցող բրիգադաներին ընկերական օգնություն ցույց տալու հարցը։ Առաջավոր բրիգադայի լավագույն աշխատողներից մի քանի հոգի կարող են լինել ետ մնացող բրիգադայում, այնտեղ աշխատող ընկերներին հաղորդակից դարձնել իրենց փորձի մասին և օգտակար խորհուրդներ տալ։ Կարելի է նաև հրավիրել հարևան բրիգադայից առաջավորներին և իմանալ, թե ինչպես են աշխատում նրանք, ինչպիսի ձևեր ու միջոցներ են պետք ետ մնալը հաղթահարելու համար և այլն։ Իսկ եթե զրույցը տեղի է ունենում այնպիսի բրիգադայում, որի բրիգադիրը աշխատանքի է անցել ետ մնացող տեղամասում, ագիտատորի խնդիրն է զրույցի համար հիմնական նյութը դարձնել այն հարցը, որ հարկավոր է չթուլացնել աշխատանքի տեմպերը, բարձր պահել առաջավորի կոչումը, փնտրել և գտնել նորանոր ռեզերվներ արտադրությունը կատարելագործելու համար։

Ագիտատորը բոլորովին այլ կերպ պետք է



զրույցը անցկացնի ետ մնացող կոլեկտիվում, ուր Գագանովայի օրինակով աշխատանքի է եկել նոր բրիգադիրը։ Այստեղ ագիտատորը պետք է լինի բրիգադիրի ամենամոտ օգնականը՝ կոլեկտիվի անդամներին սիստեմատիկաբար պարզաբանի բրիգադիրի ձեռնարկած միջոցառումները բարձր արտադրողաբար աշխատանք կատարելու վերաբերյալ և ամեն կերպ օգնի բրիգադիրին ետ մնալու դեմ մղվող պայքարում։ Ետ մնացող կոլեկտիվներում ագիտատորները իրենց զրույցներում պետք է մեծ տեղ հատկացնեն մեքենաներն ավելի արդյունավետ օգտագործելու և արտադրության մեջ առաջավոր փորձն արմատավորելու հարցերին։

Վալենտինա Գագանովայի նախաձեռնությունը ջերմ արձագանք է գտել մեր ռեսպուբլիկայում։ Նրա օրինակով հարյուրավոր առաջավորներ պայքարում են ետ մնալու դեմ։

Մեր ագիտատորների խնդիրն է ամեն կերպ ծավալել Գագանովայի հիանալի նախաձեռնությունը, որպեսզի բոլոր բրիգադաներն ու ցեխերը, տեղամասերն ու կոլեկտիվները դառնան արտադրության առաջավորներ։

---

# ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

ՔՆ. ՄԿՐՏՉՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության գյուղատնտես

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը խնդիր դրեց հասնել գյուղատնտեսական արտադրության այնպիսի մակարդակի, որը թույլ տա լիովին բավարարել պարենի ասպարեզում՝ բնակչության և հումքի ասպարեզում՝ արդյունաբերության պահանջմունքները, ապահովել գյուղատնտեսական մթերքների ասպարեզում պետության մյուս բոլոր կարիքները։

Քաղաքական և տնտեսական նշանակություն ունեցող այս մեծ խնդիրը պետք է լուծվի ամենից առաջ գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության զգալի բարձրացման միջոցով։

Յոթնամյակի ընթացքում երկրում բամ-



բակի արտադրությունը պետք է հասցվի 5,7—6,1 միլիոն տոննայի։

Բամբակագործության աշխատողների առջև դրված այս մեծ խնդրի լուծումը կարելի է իրականացնել բամբակենու կուլտուրայի մշակության և խնամքի ագրոտեխնիկական միջոցառումները է՛լ ավելի կատարելագործելու և արտադրության հետագա մեքենայացման միջոցով։

Բամբակագործության բնագավառում ագրոտեխնիկական միջոցառումները ժամանակին և բարձր որակով կիրառելու, աշխատատար պրոցեսների մեքենայացումը ամբողջովին ընդլայնելու և բամբակենու բերքատվության զգալի բարձրացումն ապահովելու տեսակետից ուսանելի է Էջմիածնի շրջանի Վերին Քյոլանլու գյուղի կոլտնտեսության փորձը։

Այս կոլտնտեսությունը բազմաճյուղ տնտեսություն է։ Բացի բամբակից կոլտնտեսությունը մշակում է նաև բանջարեղեն, եգիպտացորեն, խաղողի և պտղատու այգիներ։ Դաշտավարության հետ զուգընթաց կոլտնտեսությունում աճում և զարգանում է հանրային անասնապահությունը։

Տարեցտարի կատարելագործելով բամբակենու մշակության ագրոտեխնիկական

միջոցառումները, կոլտնտեսությունը բամբակի բերքատվության բարձրացման գործում աչքի ընկնող հաջողություններ է ձեռք բերել։ Այսպես, 1956 թվականին մշակած 197 հեկտար բամբակենու յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսությունը ստացել է 17 ցենտներ բերք, 1957 թվականին այն հասցվել է 26,7 ցենտների, իսկ 1958 թվականին ամեն մի հեկտարից կոլտնտեսությունը հավաքել և պետությանն է հանձնել 34,1 ցենտներ բամբակ։

Այս տարի կոլտնտեսությունը մշակում է 150 հեկտար բամբակ և պարտավորվել է ամեն մի հեկտարից ստանալ 36—37 ցենտներ բերք։ Հեկտարից այդքան բամբակ ստանալու համար կոլտնտեսությունը պայքար էր ծավալել դեռ անցյալ տարվա աշնանից։

Աշնանը բերքահավաքը ավարտելուց հետո սկսվեց դաշտերը բերքի մնացորդներից ազատելու և ցրտահերկ կատարելու աշխատանքները։ Անմիջապես գործի դրվեցին ցողունահավաք մեքենաները, որոնք համարյա ամբողջ ցանքատարածության վրա ապահովեցին ցողունների հանումը հողից։

Ցողուններից ազատված դաշտերը պա-



րարտացվել են հանքային պարարտանյութերով և անմիջապես վարվել։

Վարից առաջ յուրաքանչյուր հեկտարին տրվել է 500 կիլոգրամ սուպերֆոսֆատ։ Տարածության մոտ մեկ երրորդի վրա կատարվել է ցրտահերկ 30—35 սմ. խորությամբ, իսկ մնացած հողամասում կատարվել է գարնանավար։ Հողերի գարնանավարը կատարվել է բացառապես հողի հասունացման շրջանում, որի հետևանքով դաշտերում բոլորովին կոշտեր չեն առաջացել։

Ցրտահերկ և գարնանավար կատարված դաշտերում ցանքից առաջ տարվել է հետևյալ մշակությունը։ Այն դաշտերում, որտեղ ցրտահերկը փուխր էր, կոշտեր չկային և մոլախոտեր չէին աճել, ցրտահերկը փոցխվել է, որից հետո կատարվել է ցանքը, իսկ համեմատաբար կոշտոտ և մոլախոտերով վարակված դաշտերում կատարվել է չիզելացում ու փոցխ։ Արդեն մի քանի տարի է, որ կոլտնտեսությունը հրաժարվել է ցրտահերկերում և գարնանավարի վրա կրկնավար կատարելուց, քանի որ կրկնավարի դեպքում չի ապահովվում հողի լավագույն մշակությունը և լրիվ ծիլեր ստանալու նախապայմաններն ու հնարավորությունները։

Ցանքը կատարվել է 8 աշխատանքային օրում։ Այս տարի կոլտնտեսությունը որոշ տարածության վրա ցանքը կատարել է քառակուսի-բնային եղանակով և ապահովել այդ ցանքերի երկկողմանի մշակությունը, որը զգալիորեն կիջեցնի հումքի ինքնարժեքը և կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը։

Այդ նպատակով 20 հեկտար տարածության վրա կատարվել է քառակուսի-բնային ցանք, 50×50 սմ. միջշարային հեռավորությամբ։ Բացի այդ, սովորական ցանքերից առանձնացվել է 10 հեկտար տարածություն, որի վրա կատարվել է մեքենայական նոսրացում։ Քառակուսի-բնային ցանքերում կատարված միջշարային մշակությունների ժամանակ կոլտնտեսության ղեկավարությունը համոզվեց այն բանում, որ տեղի հողային պայմաններից ելնելով 50×50 սմ. միջշարային հեռավորություններով ցանք կատարելը նպատակահարմար չէ, որովհետև այս դեպքում բույսերի շարքերը շատ շուտ են միանում և հետագայում հնարավորություն չի լինում տրակտորներով մշակություններ տանել։ Հաշվի առնելով այս տարվա փորձը կոլտնտեսությունը որոշել է եկող տարի մեծ չափով ընդարձա-



կել քառակուսի-բնային ցանքերի տարածությունը և այն կատարել 60×60 սմ. միջշարային հեռավորությամբ։

Կոլտնտեսությունում ապահովված է բույսերի նորմալ խտությունը, ստեղծված են լիարժեք հեկտարներ, որը բամբակի բերքատվության բարձրացման կարևոր միջոցառումներից մեկն է։ Բամբակի ծիլերը երևալուց անմիջապես հետո կոլտնտեսությունը սկսել է նրանց նոսրացման և միջշարքերի փխրեցման աշխատանքները։ Բրիգադներում աշխատանքը լավ կազմակերպելու շնորհիվ միջշարային յուրաքանչյուր մշակություն, 150 հեկտար տարածության վրա, կատարվել է 10—12 աշխատանքային օրում։ Բամբակի աճման ընթացքում կատարվել է 4—5 կուլտիվացիա և նույնքան ձեռքի փխրեցումներ, որի շնորհիվ ցանքերը անընդհատ գտնվել են փուխր և մոլախոտերից զերծ վիճակում։

Հայտնի է, որ միայն միջշարային մշակություններով չի կարելի ապահովել բարձր բերքի ստացումը։

Գիտության և առաջավորների փորձով ապացուցված է, որ բույսերի կոկոնակալման շրջանում ավելանում է նրանց պահանջը սննդանյութերի նկատմամբ, որ ա-

զոտական պարարտանյութերով տրվող վաղ սնուցումները մեծ չափով արագացնում են բույսերի աճն ու զարգացումը և բարձրացնում նրանց բերքատվությունը։ Հետևաբար ճիշտ ժամկետին սնուցումներ տալու հարցը կոլտնտեսության առաջնակարգ և անհետաձգելի խնդիրն էր։

Ղեկավարվելով վերոհիշյալով, այս տարի կատարվել է երկու սնուցում, ըստ որում առաջին սնուցումը տրվել է բույսերի վրա 3—4 տերևներ առաջանալու շրջանում, իսկ երկրորդը՝ ծաղկման շրջանում։

Առաջին սնուցման ժամանակ յուրաքանչյուր հեկտարին տրվել է 150 կգ. ամոնիակային սելիտրա, իսկ երկրորդ սնուցման ժամանակ հողի մեջ մտցվել է 200 կիլոգրամ ամոնիակային սելիտրա և նույնքան սուպերֆոսֆատ, ըստ որում այդ սնուցումն ավարտվել է հուլիսի երկրորդ տասնօրյակում։

Բամբակենու ցանքը ճիշտ ժամանակին ջրելը նպաստում է բերքատվության բարձրացմանը։ Այստեղ առաջին վեգետացիոն ջուրը տրվել է բամբակի մասսայական ծաղկման շրջանում, որը մեծ նշանակություն ունի վաղ և շուտ հասունացող բերքի կազմավորման գործում։



Բամբակենու վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի աշխատանքները տարվել են ճիշտ ժամկետներին, որի շնորհիվ իսպառ վերացվել է բերքի կորուստը վնասատուներից։

Բամբակենու ցանքերի մշակությունը օրինակելիորեն կազմակերպելու և բարձր բերք աճեցնելու գործում առանձնապես աչքի է ընկնում № 1 բրիգադայի բրիգադիր Ս. Գրիգորյանը, որը միաժամանակ կոլտնտեսության պարտկազմակերպության քարտուղարն է։ Նրա ղեկավարած բրիգադը անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 34 ցենտներ, իսկ այս տարի պայքարում է 50 հեկտար ցանքատարածության ամեն մի հեկտարից ստանալ 40 ցենտներ բերք։

Նույն բրիգադայի օղակավարուհիներ Լենա Ասլանյանը և Ռիմա Խաչատրյանը պայքարում են ամեն մի հեկտարից հավաքել 50 ցենտներից ոչ պակաս բերք։

Այժմ կոլտնտեսությունում մշակության աշխատանքները համարյա ավարտվելու վրա են, շարունակվում է ցանքերը ջրելու և վնասատուների դեմ պայքարի աշխատանքները։ Կոլտնտեսությունը ձեռնարկել է բերքահավաքի նախապատրաստական աշխա-

տանքներին, վերանորոգվում և ձեռք են բերվում բարդաններ, գոգնոցներ, կարգի են բերվում արևային չորացման հրապարակները և փոխադրական միջոցները։

Կոլտնտեսությունում հատկանշական է այն, որ այստեղ չկան առաջնահերթ և երկրորդական կուլտուրաներ կամ տնտեսության առանձին ճյուղեր։ Այստեղ հավասար ուշադրություն է դարձվում տնտեսության բոլոր ճյուղերին, որը շատ պարզ երևում է հետևյալ տվյալներից։ Տնտեսությունն ունի 50 հեկտար պտղատու, խաղողի այգի, անցյալ տարի ամեն մի հեկտարից ստացել է 70 ցենտներ միջին բերք, իսկ այս տարի սպասվում է 120—130 ցենտներ բերք։

Կոլտնտեսությունում անցյալ տարի մշակվել է 18 հեկտար բանջարեղեն և ամեն մի հեկտարից ստացվել է 400 ցենտներ բերք։ Այս տարի կոլտնտեսությունը արդեն բանջարանոցային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 400 ցենտներ բերք և դեռ բերքահավաքը շարունակվում է։

Բարձր բերք է ստացվում նաև եգիպտացորենից, որի ամեն մի հեկտարից ստացվել է 400 ցենտներ կանաչ մասսա։



Մեծ են հաջողությունները նաև անասնապահության բնագավառում։ Անցյալ տարի կովերի միջին կաթնատվությունը կազմել է 2.000 կգ., իսկ այս տարի այն կհասցվի 2.300 կգ.։ Անցյալ տարի կոլտնտեսությունը յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության համար արտադրել է 330 ցենտներ կաթ, իսկ ընթացիկ տարում արտադրվելու է 400 ցենտներ, զգալիորեն ավելացել է նաև մսի արտադրությունը։ Նախատեսնըված է ամեն 100 հեկտարի համար մսի արտադրությունը հասցնել 100 ցենտների, անցյալ տարվա 65 ցենտների դիմաց, այդ թվում խոզի մսի արտադրությունը՝ 33 ցենտների, անցյալ տարվա 26 ցենտների փոխարեն։ Կոլտնտեսությունում այս տարի արդեն յուրաքանչյուր մայր խոզից աճեցվել և պահպանվել է 24 խոճկոր։

Բրդի արտադրությունը անցյալ տարի 100 հեկտար հողատարածության վրա կազմել է 3,3 ցենտներ կամ ամեն մի ոչխարից ստացվել 2,7 կգ. բուրդ։ Այս տարի նախատեսնըված է բրդի արտադրությունը հասցնել 4 ցենտների, 100 հեկտարի դիմաց, կամ յուրաքանչյուր ոչխարից ստանալ 3—3,2 կգ. բուրդ, պլանով նախատեսնված 2,8 կգ. փոխարեն։

Ընթացիկ տարում յուրաքանչյուր հավի ձվատվությունը նախատեսնված էր հասցնել 90 հատի, սակայն ձեռնարկված միջոցառումների շնորհիվ արդեն օգոստոսին յուրաքանչյուր հավից ստացվել է 90 ձու, իսկ մինչև տարվա վերջը այն կհասցվի 130 հատի։ Ստացված 2.600 ինկուբատորային ճըտերից աճեցվել և պահպանվել է նրանց 95 տոկոսը։

Կոլտնտեսությունը ղեկավարում է պարտիայի կոչով գյուղ մեկնած 30 հազարական ընկ. Խաչիկ Սիմոնյանը։

---



# ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

(Կազմավորման 10-րդ տարեդարձի առթիվ)

Տասը տարի առաջ, 1949 թվականի հոկտեմբերի 1-ին Չինաստանի 600 միլիոնանոց հզոր ժողովուրդը իր հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ փառավոր հաղթանակ տարավ օտարերկրյա կապիտալիստների և ներքին ռեակցիոն ուժերի դեմ մղվող պայքարում։

Չինաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ստեղծումը նոր էտապ բացեց չինական մեծ ժողովրդի պատմության մեջ։ Տասը տարվա ընթացքում սոցիալիստական շինարարության ուղղությամբ ձեռք բերած մեծագույն հաջողությունները ոգևորության և ստեղծագործ աշխատանքի նոր, հզոր ալիք առաջ բերեց չին ժողովրդի ամենալայն մասսաների մեջ։ Այդ հաջողությունները խորապես ուրախացնում

են նաև Սովետական Միության և սոցիալիստական լագերի մնացած երկրների ժողովուրդներին, որոնք բարեկամական, անշահախնդիր օգնություն են ցույց տալիս չինական ժողովրդին, նրա երջանիկ ապագայի՝ սոցիալիզմի կառուցման գործում։

Չինական ռևոլյուցիայի հաղթանակը ունի պատմական խոշոր նշանակություն։ Նա իմպերիալիստական սիստեմին մի այնպիսի հարված հասցրեց, որպիսին կապիտալիզմը չէր զգացել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո։ Այդ հաղթանակը անչափորեն ամրապնդեց սոցիալիզմի լագերը, միջազգային արենայում վճռականորեն փոխեց ուժերի փոխհարաբերակցությունը հօգուտ սոցիալիզմի և առաջադիմության։

Դեն նետելով գաղութային ստրկության անիծյալ շղթաները, ահա 10 տարի է, ինչ ազատագրված չին ժողովուրդը սեփական ձեռքերով տնօրինում է իր բախտը, համառ ու հետևողական կերտում իր երջանիկ այսօրը և է՛լ ավելի պայծառ ու լուսաշող ապագան։ Իմպերիալիստների բոլոր փորձերը՝ խանգարել չինական ժողովրդին կառուցելու նորը, սոցիալիստական հասարակարգը,



մեկընդմիշտ անհաջողության է դատապարտված։

1958 թվականի մայիսին կայացած Չինաստանի Կոմունիստական պարտիայի 8-րդ համագումարի երկրորդ սեսիան ծրագրեց երկրում սոցիալիզմի կառուցման գլխավոր գիծը, խնդիր դնելով առավելագույն չափով մոբիլիզացնել ժողովրդական մասսաների ողջ ուժերը, առաջ մղել սոցիալիստական շինարարությունը ավելի արագ, ավելի լավ և խնայողաբար։ Ելնելով այդ կարևորագույն ծրագրային խնդրից, չին ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պայքարի է ելել առաջիկա 15 տարում կամ ավելի պակաս ժամանակամիջոցում արդյունաբերության առավել կարևոր տեսակների արտադրանքի արտադրության տեսակետից հասնել և անցնել Անգլիային։

Սոցիալիստական կարգերի ստեղծման օրից անցած տասը տարիները եղել են Չինաստանի ժողովրդական տնտեսության զարգացման բուռն վերելքի տարիներ։ Նախկին հետամնաց, կիսագաղութային երկրից նա ներկայումս դառել է ծաղկող արդյունաբերության և գյուղատնտեսության երկիր, իր հրաշալի կուլտուրայով, արվեստով ու գրականությամբ։

Անշեղ վերելք է ապրում Չինաստանի արդյունաբերությունը։ Մինչև Չինաստանի ազատագրումը 50 տարվա ընթացքում արդյունահանվել է մեկ միլիարդ տոննայից մի քիչ ավելի քարածուխ և 2,8 միլիոն տոննա նավթ։ Երկրի ազատագրումից հետո յոթ տարվա ընթացքում արդյունահանվել է 150 միլիոն տոննա քարածուխ և 4,48 միլիոն տոննա նավթ։ Պողպատի ձուլումը 1957 թվականի 5,35 միլիոն տոննայից, 1958 թվականին հասել է մինչև 11 միլիոն տոննայի, ածխի հանույթը համապատասխանորեն ավելացել է 130 միլիոն տոննայից մինչև 270 միլիոն տոննայի, մետաղահատ մեքենաների արտադրությունը՝ 28 հազար հատից մինչև 90 հազարի։ Պողպատի արտադրությամբ Չինաստանը 1952 թվականին աշխարհում բռնում էր 18-րդ տեղը։ Արդեն 1953 թվականին նա առաջ անցավ երեք երկրներից, իսկ հետագա 4 տարիների ընթացքում իր ետևում թողեց վեց պետություն և բռնեց 10-րդ տեղը աշխարհում։ 1958 թվականին անցնելով Բելգիայից և Իտալիայից, Չինաստանը պողպատի արտադրությամբ 10-րդ տեղից բարձրացավ 7-րդ տեղը։

Ածխի հանույթով և դազգահների արտա-



դրությամբ Չինաստանը ներկայումս առաջ է անցել Անգլիայից։

1928 թվականին երկրում մեքենաշինության արտադրանքը ավելացել է ավելի քան 4 անգամ, մետալուրգիական սարքավորումների թողարկումը՝ 40 անգամ, լեռնահանքային հանույթը՝ 6,5 անգամ, նավթինը՝ 15 անգամ, ջերմաէլեկտրակայանների համար կոմպլեքսային սարքավորումների արտադրությունը՝ 4 անգամ։ Արտադրվել է ավելի քան 27,5 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 1957 թվականի 19,03 միլիարդ կիլովատ-ժամի դիմաց։

Անցած 10 տարվա ընթացքում Չինաստանի գյուղական աշխատավորությունը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ խոշոր հաղթանակներ է ձեռք բերել գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ։ Եթե 1950 թվականին երկրում կար միայն 19 գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվ, ապա 1956 թվականին այն հասավ 993.632-ի, որը կազմում է գյուղացիական տնտեսությունների ընդհանուր թվի 91,9 տոկոսը։ Ցորենի արտադրության ընդհանուր ծավալով Չինաստանը առաջ է անցել Ամերիկայի Միացյալ Նահանգներից։ Բրնձի արտադրության գծով Չինաստանը ներկայումս

բռնում է առաջին տեղը աշխարհում, իսկ եգիպտացորենի, բամբակի, ծխախոտի գըծով՝ երկրորդ տեղը։ Միայն 1956 թվականի ընթացքում յուրացվել է 29 միլիոն մու (մուն հավասար է 1/15 հեկտարի) խոպան հող։ Գյուղատնտեսական մեքենաները վերանորոգելու համար կազմակերպված է 47.000 կայան։

Չինաստանում ոռոգելի հողերի տարածությունը միայն վերջին ժամանակներս ընդարձակվել է 28,3 միլիոն հեկտարով։ 1949 թվականին կար ընդամենը 15,3 միլիոն հեկտար ոռոգելի տարածություն։ Առաջին հընգամյակի տարիներին այդ թիվը կրկնապատկվեց, իսկ վերջին մեկ տարում այն ավելացավ 4 անգամ։ Ռեսպուբլիկայում դրվել է հայրենական տրակտորային արդյունաբերության հիմքը։ 1958 թվականին Լոյանի տրակտորային գործարանը բաց թողեց իր առաջին տրակտորները։ Ներկայումս երկրի բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն 27 հազար տրակտոր։

Լայն մասշտաբով է սկսվել չինական գյուղի էլեկտրիֆիկացումը։ Կառուցվել ու կառուցվում են ավելի քան 14.500 փոքր էլեկտրակայաններ՝ 200 հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ։ Դա 10 անգամ



ավելի է, քան կառուցվել է անցած ութ տարիների ընթացքում և 40 անգամ ավելի, քան այն եղել է հին Չինաստանում։

Չինական ժողովրդին սոցիալիստական շինարարության ծավալման գործում մեծ օգնություն են ցույց տալիս Սովետական Միությունն ու սոցիալիստական լագերի մյուս երկրները։ Սովետական Միությունը Չինաստանին մատակարարում է զանազան սարքավորումներ և տեխնիկական օգնություն է ցույց տալիս 211 խոշորագույն արդյունաբերական օբյեկտների կառուցումը հաջողությամբ ավարտելու համար։

Խոշոր են չին ժողովրդի հաջողությունները նաև կուլտուրայի, գրականության և արվեստի զարգացման ասպարեզում։ Բավական է ասել, որ 1955 թվականին Չինաստանում հրատարակվել է 285 լրագիր՝ մոտ 11 միլիոն ընդհանուր տիրաժով և 370 ամսագիր՝ 16 միլիոն 700 հազար տիրաժով։ Դա գրեթե 6 անգամ ավելի է քան մինչ 1949 թվականը։

Այս տարվա օգոստոսի 16-ին տեղի ունեցած Չինաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ութերորդ գումարման 8-րդ պլենումը մանրակրկիտ կերպով ստուգելով 1959 թվականի ժողո-

վըրդատնտեսական պլանների կատարման ընթացքը և հանգամանորեն քննարկելով երկրի այժմյան տնտեսական վիճակը, մարտական խնդիր դրեց ժամկետից շուտ կատարելու երկրորդ հնգամյակի (1958—1962 թ. թ.) պլանները։

Պլենումը գոհունակությամբ նշեց, որ պարտիայի գլխավոր գիծը կյանքում անշեղորեն կիրառման շնորհիվ հաջողությամբ են կատարվում ժողովրդական տնտեսության առաջադրված բոլոր ցուցանիշները։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում արդյունաբերության համախառն արտադրանքը, անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 65 տոկոսով, իսկ երկաթուղային բեռների փոխադրման ծավալը ավելացել է 49 տոկոսով։

Ինչպես ցույց են տվել տվյալները գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը 1958 թվականին, Չինաստանի ողջ պատմության մեջ ամենաբարձրն է եղել։ Փաստորեն 1958 թվականին ստացվել է 500 միլիարդ ցզեն հացահատիկ, այսինքն 35 տոկոսով ավելի քան 1957 թվականին և 42 միլիոն դանա բամբակ, այսինքն 28 տոկոսով ավելի քան անցյալ տարի։



Զգալիորեն ավելացել է նաև մանրածախ ապրանքների շրջանառությունը, որը 1959 թվականի առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 23 տոկոսով։

Նկատի ունենալով 1959 թվականի առաջին կիսամյակի պլանների կատարման բարձր արդյունքները և եղած հնարավորությունները, պլենումը որոշեց վերանայել չորս կարևոր ցուցանիշների՝ պողպատի, ածխի, հացահատիկի և բամբակի կոնտրոլ թվերը։ Առաջարկվել է պողպատի ձուլումը հասցնել 12 միլիոն տոննայի, ածխինը՝ 335 միլիոն տոննայի, հացահատիկի և բամբակի արտադրությունը 1958 թվականի փաստական կատարվածի դիմաց համապատասխանորեն ավելացնել 10 տոկոսով։ Պլենումը հանձնարարեց Պետական խորհրդին եղած ցուցանիշների հիման վրա մշակել նոր միջոցառումներ և այն հաստատման ներկայացնել ժողովրդական ներկայացուցիչների Համաչինական ժողովի Մշտական կոմիտեին։

Պլենումի որոշման մեջ ասված է, որ այն լիովին պաշտպանում է արտաքին գործերի մինիստրների Ժնևյան խորհրդակցությունում Սովետական Միության ցուցաբե-

րած ջանքերը և միաժամանակ ողջունում է երկու մեծ տերությունների՝ Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների ղեկավարների առաջիկա փոխադարձ այցելությունների մասին հրապարակված հաղորդագրությունը։ Կենտկոմի պլենումը կոչ է արել ամբողջ պարտիային և երկրի բոլոր ժողովուրդներին միաձույլ ուժերով և միահամուռ կամքով համախմբվել պարտիայի շուրջը և Կենտկոմի ղեկավարությամբ արագորեն առաջ շարժվել, պայքարել 1959 թվականի և ամբողջ երկրորդ հնգամյակի ժողովրդատնտեսական պլանները անշեղորեն կենսագործելու համար։

Գնալով ավելի են ամրապնդվում եղբայրական, ինտերնացիոնալիստական կապերը երկու մեծ երկրների՝ Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ժողովուրդների միջև։ Այդ հավերժ անխորտակելի բարեկամությունը ամրապնդվել է կոմունիզմի համար մղվող միասնական նպատակներով։

Ժողովրդական Չինաստանը այսօր, դա մի հզոր, անկախ և խաղաղասեր պետություն է։ Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների հետ միասին Չինաստանը կազմում է միաձույլ



ու հզոր սոցիալիստական լագերը։ Սովետական Միության գլխավորությամբ սոցիալիստական լագերի խաղաղասիրական քաղաքականությունը ոգեշնչում է բոլոր ազատասեր ժողովուրդներին՝ հանուն խաղաղության, հանուն ստեղծագործ աշխատանքի, ընդդեմ պատերազմի սպառնալիքների ու ամեն տեսակի բռնությունների։

Նոր ուժերով ու հզոր էներգիայով յի ժողովրդական Չինաստանը հաստատակամորեն ընթանում է դեպի սոցիալիզմը։ Այլևս ոչ մի խոչընդոտություն ու դժվարություն չեն կարող կասեցնել չինական մեծ ժողովրդին իր վերջնական նպատակին հասնելու համար։

Վ. ԲՋՆՈՒՆԻ

# ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՃԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Մեր երկրում տարեցտարի բարելավվում է ժողովրդի նյութական բարեկեցությունը։ Հարազատ Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունն անդուլ հոգատարություն են ցուցաբերում ժողովրդի բարօրության նկատմամբ։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։

★ Սովետական իշխանության տարիներին ազգային եկամուտը ՍՍՌՄ-ում, բնակչության մեկ շնչի հաշվով, ավելացել է 15 անգամ։ Ժողովրդի նյութական և կուլտուրական պահանջների բավարարման համար հատկացվում է ազգային եկամտի մոտ երեք քառորդը։

★ Վերջին 5 տարում ազգային եկամուտը մեզ մոտ ավելացել է 61 տոկոսով։ Բնակարանային վարձը կոմունալ ծառայությունների հետ միասին, միջին հաշվով կազմում է ընտանիքի բյուջեի 4—5 տոկոսը, իսկ կապիտալիստական երկրներում՝ մոտ 20—25 տոկոսը։

★ 1940 թվականի համեմատությամբ ներկայումս



հիմնական սննդամթերքների գործածությունը միջին հաշվով մեկ շնչին ավելացել է 2 անգամ։

★ ՍՍՌՄ-ում հասարակական արտադրության մեջ զբաղված է մոտ 100 միլիոն մարդ, պետության կողմից թոշակ է ստանում մոտ 20 միլիոն մարդ։ 3,8 միլիոն միայնակ և բազմազավակ մայրեր ստանում են պետական նպաստ։

★ Մեր երկրում 5 միլիոն երեխա ընդգրկված են մանկապարտեզներում և մանկամսուրներում, 3 միլիոն 300 հազար ուսանող ստանում են թոշակ։ Գիշերօթիկ դպրոցների սովորողները լրիվ պահվում են պետության հաշվին։

★ Ամեն տարի 5 միլիոն 600 հազար երեխա հանգստանում են պիոներական ճամբարներում, 3 միլիոնից ավել աշխատավորներ մեկնում են սանատորիաներ և հանգստյան տներ։

★ Մեր երկրում պետական բյուջեի յուրաքանչյուր երրորդ ռուբլին ծախսվում է սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար։

★ Բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները 1958 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել են համարյա 2 անգամ, իսկ գյուղացիների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով՝ 2 անգամից ավելի։

★ ՍՍՌՄ-ն ունի ծննդաբերության բարձր մակարդակ՝ բնակչության 1.000 հոգուն ընկնում է ավելի քան 25 ծնունդ։ Մինչռևոլյուցիոն ժամանակա-

շրջանի հետ համեմատած ՍՍՌՄ-ի բնակչության ընդհանուր մահացությունը իջել է 4 անգամ, իսկ երեխաների մահացությունը՝ համարյա 7 անգամ։

★ Մահացության մակարդակի նշանակալից իջեցման շնորհիվ՝ կյանքի միջին տևողությունը մեզ մոտ 1955—1956 թթ. կազմում էր 67 տարի, մինչռևոլյուցիոն Ռուսաստանի 32 տարվա համեմատությամբ և 1926—1927 թթ. 44 տարվա համեմատությամբ։ Կյանքի տևողությունը ՍՍՌՄ-ում 2 անգամից ավելի բարձր է մինչռևոլյուցիոն Ռուսաստանի կյանքի միջին տևողությունից։

★ Լայն սպառման առարկաների արտադրությունը 1958 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է համարյա 14 անգամ, ընդ որում կուլտուր-կենցաղային առարկաների արտադրությունը՝ ավելի քան 45 անգամ։

★ Վերջին 5 տարում, նախորդ տարվա համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների արտադրության տարեկան միջին աճը կազմում է 39 տոկոս։

★ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը երկրում 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացել է 15 միլիոն գլխով։ Մսի արտադրությունը 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ ավելացել է 1,4 անգամ, կաթինը՝ 1,6, ձվինը՝ 1,5, բրդինը՝ 1,4 անգամ։

★ 1958 թվականին բնակչությունը պետությունից



ստացավ 64 միլիարդ ռուբլի կենսաթոշակ, որը գրեթե 2,5 անգամ գերազանցում է 1953 թվականին բնակչությանը վճարված կենսաթոշակների չափը։

★ 1959 թվականի անցած 5 ամսում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ 110 միլիոն մետր գործվածք և 12 միլիոն զույգ կաշվե կոշիկ ավել է արտադրվել։

★ Մեր երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները այս տարի կատարել են 126 միլիոն 300 հազար հեկտար գարնանացան։ Ցանվել է 2 միլիոն 800 հազար հեկտարի եգիպտացորեն, իսկ շաքարի ճակնդեղ՝ գրեթե 500 հազար հեկտարով ավելի, քան անցյալ տարի։

★ Ընթացիկ տարվա առ 1-ը հունիսի, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 15 տոկոսով, խոզերինը՝ 17, ոչխարներինը՝ 7, թռչուններինը՝ 57 տոկոսով։

★ Այս տարվա 5 ամսում կոլտնտեսությունները և սովխոզները պետությանը կենդանի քաշով անասուն են վաճառել 54 տոկոսով ավելի, կաթ՝ 30 տոկոսով, ձու՝ 40 տոկոսով, բուրդ՝ գրեթե 10 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա նույն ժամանակաշրջանում։

★ Բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները յոթնամյակի ընթացքում, 1 աշխատողի հաշվով, միջին չափով կաճեն 40 տոկոսով՝ ինչպես աշխատավարձի, կենսաթոշակների ու նպաստների աճի շնոր-

հիլ, այնպես էլ հասարակական սննդի գների իջեցման միջոցով։ Կոլտնտեսականների ռեալ եկամուտները յոթնամյակի ընթացքում կաճեն առնվազն 40 տոկոսով։

★ Նախատեսվում է 1960 թվականին բանվորներին և ծառայողներին փոխադրել յոթժամյա աշխատօրվա, իսկ ածխային ու լեռնահանքային արդյունաբերության մեջ ստորերկրյա աշխատանքներ կատարող առաջատար պրոֆեսիաների. բանվորներին՝ վեցժամյա աշխատօրվա, ինչպես նաև 1962 թվականին լրիվին իրագործել յոթժամյա աշխատօր ունեցող բանվորների ու ծառայողների փոխադրումը 40-ժամյա աշխատանքային շաբաթվա։

★ Կրճատ աշխատօրվա անցնելը և շաբաթվա մեջ աշխատօրերի թվի նվազեցումը նախատեսված է կատարել առանց աշխատավարձը նվազեցնելու։

Դրա շնորհիվ ՍՍՌՄ-ում կլինի աշխարհում ամենակարճ աշխատօրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը։

★ Արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության և բնակչության եկամուտների աճին համապատասխան, պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը յոթնամյակում կաճի մոտավորապես 63 տոկոսով, (համադրելի գներով)։

★ Բնակչությանը անասնաբուծական մթերքների վաճառքը յոթնամյակում կավելանա 2,2 անգամ։ Նույն ժամանակաշրջանում ձեթի վաճառքը կավելանա 1,9



անգամ, մրգերինը և ցիտրուսներինը՝ 3 անգամ։ Զգալի ավելանալու է շաքարի արտադրությունը։ Մինչև յոթնամյակի վերջը Սովետական Միությունում բնակչության մեկ շնչին ընկնող շաքարի արտադրությունը, 1958 թվականի 26 կգ. դիմաց կհասնի տարեկան 41—44 կիլոգրամի։

★ Անցած յոթնամյակի համեմատությամբ բնակչությանը սառնարանների վաճառքը կավելանա 5.9 անգամ, լվացքի մեքենաների և սարքերի վաճառքը՝ 9,1 անգամ, կարի մեքենաներինը՝ 2,1 անգամ, հեռուստացույցներինը՝ 4,6 անգամ և այլն։

★ Նախատեսվում է 1959—1965 թվականներին կառուցել մոտ 15 միլիոն բնակարան։ Գյուղական վայրերում կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի ուժերով կկառուցվի մոտ 7 միլիոն բնակելի տուն։ Յոթնամյակի վերջին քաղաքներում և բանավաններում բնակարանային ֆոնդը կմեծանա 1,6 անգամ։

★ Առողջապահության, սոցիալական ապահովության, ֆիզկուլտուրայի և սպորտի հիմնարկների շինարարության մեջ կատարվող կապիտալ ներդրումները կկազմեն ավելի քան 25 միլիարդ ռուբլի։

---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

# СОДЕРЖАНИЕ




**ЦК КП Армении**

**Отдел пропаганды и агитации**

**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 17** **1959 г.**

*ՎՖ 06185* *Պատվեր 555* *Տիրաժ 8600*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.*